վայլին եւ արհեստագիտական մասնագէտներ ղըրկած են Ալպանիա, խռովութիւնները զսպելու համար։ Ամէն անգամ որ Թռուցիկներ կը նետուին, իշխանութիւնները, իրենց բնակարաններուն մէջ կ'արգելափակեն քաղաքացիները եւ ազատ կը ձգեն զանոնք այն ատեն, երբ բոլոր Թռուցիկները հաւաքուած են ։

Եուկոսլաւիա կը վախնայ որ ալպանական խռովութիւնները պատրուակելով, Սովետները կրնան յարձակում գործել իր վրայ ։

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԷՔՍ ԼԸ ՊԷՆԻ արիւնալի ընդհարումներուն առթիւ, «Լը Փոփիւլէռ» կը գրէ թէ պատասխանատուները ուսանողները իրենք են։ Քաղաքին խաղաղ բնակչութիւնը զայրացած էր տեսնելով անոնց անկարգութիւնները պանդոկներու, սրճարաններու եւ փողոցներու մէջ։ «Կը կոտրէին կը թափէին, մենաւոր աղջիկներ կը մերկացնէին եւայլն»։

ԳԵՐՄԱՆԻՈՅ ՎԵՐԱԶԻՆՄԱՆ դէմ խօսեցաւ Պ. Տալատիէ, նախկին վարչապետ, առաջարկելով նախ Ֆրանսան եւ միւս զինակիցները զինել։ «Նորէն ձիուն վրայ չնստեցնենք այն ռազմիկը որ այնքան արշաւանքներ կատարեց մեր երկրին վրայ»։

ՔՈՐԷԱՅԻ մէջ համայնավարական նոր յարձակումի մը կը սպասուի, նկատելով որ համախմբումներ կը կատարուին սահմանագծին վրայ ։ Շաբաթ օր ամերիկեան հրասայլեր անցան սահմանագիծը (38րդ զուգահեռական), բայց յետոյ վերադարձան, կրակ տեղալէ վերջ ։

ՓՈԽԱՆՈՐԴՆԵՐՈՒ ժողովը 5 րդ շաբաթը մտաւ երէկ, երկուշաբթի։ Թերթերը նորէն լաւատես կ'երեւան։ Շաբաթ օր ամերիկեան պատուիրակը ճաշի հրաւիրած էր իր պաշտօնակիցները ։ Այս առթիւ Պ. Կրոմիքօ «այո» պատասխաներ է, երբ միւսները առաջարկեր են նոր ճիգ մը փորձել, համաձայնութեան մը յանգելու եւ օրակարգը պատրաստելու համար։ — Մոսկուայէն հեռագիր մը կը ծանուցանէ թէ Պ. Վիշինսկի ապաքինիլ սկսած է եւ պիտի կրնայ մասնակցիլ արտաքին նախարարներու ժողովին, երբ համաձայնութիւն գոյանայ ։



# ՄԻՍԱՔ ՄԵԾԱՐԵՆՑԻ ԵՒ ԴԱՆԻԷԼ ՎԱՐՈՒԺԱՆԻ

### ՕՐԸ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Սեբաստիոյ Մուրատ Ուսումնասիրացի։ Ապրիլ 15ի կիրակի երեկոյ, Salle Géographie, 184 Bd. St. Germain։

Նախագահութեամբ Պ. ԱՐՇԱԿ ՉՕՊԱՆԵԱՆԻ։ որ կը խօսի ՎԱՐՈՒԺԱՆԻ մասին ։
ՄԵԾԱՐԵՆՑԻ մասին կը խօսի՝

ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին՝ երգ՝ Օր. ԻՐԻՍ ԳԻՒԼԳԻՒԼԵԱՆ, Օր. ՄԱՐԻ ԿԱՌՎԱՐԵՆՑ։ Դաշնակ՝ ՎԵՐՈՆԻԿ ՃԻՆՃԵԱՆ։ Արտասանութիւն՝ Տիկ. Ա. ՍԱՐԳԻՍԵԱՆ եւ Ա. ԳԸՄԲԷԹԵԱՆ, ինչպէս եւ ուրիշ կարող ուժեր ։

Տոմսերը կը ծախուին հայկական գրատուները, Հրանտ Սամուէլ, 51 rue Mr. le Prince, Մկրտիչ Պարսամեան 46 rue Richer, Հրանտ Բալուեան 43 rue Richer ։

### ՅԵՐԵԿՈՅԹ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Շավիլի Ֆր. Կապ. Խաչի վարչութեան, «Կապոյտ Խաչի Օր»ուան առթիւ, 8 Ապրիլ. կիրակի ժամը 16էն 24, քաղաքապետարանի սրահը, rue Stalingrad 5 ։

Ճոխ պիւֆէ, դիւրամատչելի գինով։ Աճուրդ չկայ ։

Գեղարուեստական բաժնին կը մասնակցի Հ. Յ. Դ. Նոր Սերունդը։ Երգ, մեներգ, եւ զաւեշտ մը ։ Մուտք 100 ֆրանք

### ԸՆՏԱՆԵԿԱՆ ԽՆՋՈՅՔ

Ֆր. Կ. Խաչի Լիոնի մասնաճիւղը կազմակերպած է ընտանեկան հաւաքոյթ մը, Զատկի տօներու առթիւ, ԱՊՐԻԼ 8ին, կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3ին, 5 rue Bonnefoi, Յոյներուն սրահը։

## Փայլուն ցայգահանդէս

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Մարսէյլի «Գիւլխանդանեան» խումբին կողմէ, հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Շրջ. վարչութեան եւ Հ. Յ. Դ. ընկեր Կարօ Ենթակոմիտէի ։

Այս շաբաթ իրիկուն մինչեւ լոյս l'Ermitage սրահին մէջ։

Բանախօսութիւն, երգ, արտասանութիւն։ Հ. Յ. Դ. քաղաքի Ռոստոմ խումբը պիտի ներկայացնէ ԴԴՈՒՄԻ ՎԱՃԱՌԱԿԱՆԸ ։

Կէս գիշերէն վերջ հայկական եւ եւրոպական պարեր Գուլվար Օտտոյի Խատիսեան խումբի նուագախումբին ընկերակցութեամբ ։

ԾԱՆՕԹ. — Առնել փլաս տ'էքսէն 26 եւ 26պատէ հանրակառքերը եւ իջնել Plateau de la Visteի երկրորդ կայարանը ։

Imprimerie DER ACOPIAN 17 rue Damesme – (1
Le Gérant : A. NERCESSIAN

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՍԵԲԱՍՏԻՈՅ Մուրատ Ուս. Միութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ անդամ եւ ոչ անդամ հայրենակիցները, ապրիլ 8ին, ժամը 3.30ին Խրիմեան դպրոցը ։

ԱՊՐԻԼ 11–24Ը ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի։ Կը տօնուի Ապրիլ 22ին, կիրակի։ Կը խնդրուի նկատի ունենալ ։

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— ՏԷՍԻՆ.— Վասպուրականի Հայր. Միութիւնը կը տօնէ իր փառահեղ հերոսամարտի 36րդ տարեդարձը, Մայիս 5ին, շաբաթ օր, կէսօրէ վերջ, Հ. Յ. Դ. Տան մէջ ։



ԱՌԱՋԻՆ ԱՆԳԱՄ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

ԱՄԵՐԻԿԱՀԱՅ ԵՐԳՉՈՒՀԻ

## ԶԱՐՈՒՀԻ ԷԼՄԱՍԵԱՆԻ

ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ

Հովանաւորութեամբ Հայկ. Թանգարանի նախագահ ՆՈՒՐՀԱՆ ՖՐԷՆԿԵԱՆԻ ։

Ապրիլ 7, շաբաթ իրիկուն ժամը 9ին, Salle Chopin – Pleyel, 8 rue Daru, métro Ternes:

Տոմսերը կը ծախուին գրատուն Հ. Սամուէլ, Պարսամեան, Բալուեան, նաեւ Օր. Գալֆայեանի միջոցաւ, Տոքթ. Արամ Հանճէր, եկեղեցւոյ դիւանը եւ յանձնախումբի անդամներուն մօտ ։



կումը սպառնալիք մըն է խաղաղութեան դէմ:

Զինադադարի միջազգային յանձնախումբին տեսակէտով կացութիւնը «փափուկ է եւ ծանրակշիռ», հետեւաբար կողմերը պէտք է խաղաղօրէն լուծեն իրենց վէճերը:

Իսրայէլի վարչապետը, Պ. Պէն Կուրիոն, ըսելէ վերջ թէ Իսրայէլ, Սուրիոյ դէմ պատերազմելու ոչ մէկ դիտաւորութիւն ունի, աւելցուց.— «Պիտի չհանդուրժենք որեւէ գրգռութեան: Եթէ Սուրիացիները շարունակեն խանգարել մեր խաղաղ աշխատանքները, այդ պարագային պիտի իմանան մեր զինեալ ուժերու զօրութիւնը»:

Հրէական ուրիշ աղբիւրներ կը յայտնեն, թէ սուրիական զօրամասերու եւ հրետանիի նոր համախմբումներ կը կատարուին ապազինուած շրջաններուն մէջ եւ կացութիւնը կը մնայ լարուած:

Դամասկոս իր կարգին կ'ըսէ, թէ Հրեաները շատ մը արաբական տուներ օդը հանեցին ապազինուած շրջանին մէջ եւ Սուրիա ամէն միջոց ձեռք կ'առնէ հրէական յարձակման դէմ իր սահմանները պաշտպանելու համար:

### ՎԵՑ ՏԱՐԻ ԱՌԱՋ, ԱՂՋԻԿ ՄԸ …

«Փառի – Փռէս» (7 Ապրիլ) կը գրէ թէ ոստիկանութիւնը յաջողած է երեւան հանել վեցուկէս տարի առաջ գործուած ոճիր մը, ձերբակալելով անոր երկու հեղինակները, Ռոման Մերքէն, 35 տարեկան եւ Ժան Քառէս, 33 տարեկան: Կը փնտռուին ուրիշ երկու մեղսակիցներ:

Հրատարակուած տեղեկութեանց համաձայն, 1944 Սեպտ. 27ին չորս աւազակներ ձերբակալեցին 30 տարեկան բժշկուհի մը, Օր. Ալիս Կ…, յանուն դիմադրական ճակատի, իբրեւ Կեսթափոյի գործակալ ամբաստանելով, առանց ապացոյցի: Դժբախտ աղջիկը կ'արգելափակուի պանդոկի մը մէջ, Մոնփառնասի, կը բռնաբարուի եւ չարաչար կը խոշտանգուի: Յետոյ, աննկարագրելի վիճակի մը մատնուած, կը յաջողի փախչիլ պատուհանէ մը ցատկելով: Բոլորովին մերկ, փողոցէ փողոց կը փախչի, բայց երիտասարդ մը, որ պահակի պաշտօն կը կատարէր, զինքը գետին կը փռէ գնդացիրի կրակին տակ:

Զինուորական դատաւորները ընդհ. դատախազութեան յանձնած են թղթածրարը:

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՍՊԱՆԻԱԿԱՆ թատերախաղի մը ներկայացման առթիւ, տեղացի եւ սպանիացի ընկերվարականներ բողոքի ցոյց մը կատարեցին զօր. Ֆրանքոյի էմ, Շայեոյի պալատին առջեւ: Ոստիկանութիւնը միջամտելով սրահը պարպեց եւ կարգ մը ձերբակալութիւններ կատարեց:

ՊԵՏԱԿԱՆ ՊԱՇՏՕՆԵԱՆԵՐՈՒ ընդհ. գործադուլը անխուսափելի կը համարուի: Մասնաւորապէս խլրտումներ կը նշմարուին ելմտական նախարարութեան եւ յարակից վարչութեանց մէջ:

ՉԵԽՈՍԼՈՎԱՔԻՈՅ կառավարութիւնը որոշեց փոխել Ուաշինկթընի, Լոնտոնի եւ Փարիզի դեսպանները, որոնք անվստահելի կը համարուին:

ՖՐԱՆՍԱՅԻ ԵՊԻՍԿՈՊՈՍՆԵՐՈՒ համագումարը, որ վերջացաւ քանի մը օր առաջ, բանաձեւ մը քուէարկեց միաձայնութեամբ, պահանջելով որ կառավարութիւնը նիւթական նպաստ յատկացնէ քրիստոնէական (կաթոլիկ) դպրոցներուն: Բանաձեւը կ'ըսէ թէ աղքատները չեն կրնար դպրոցական թոշակ վճարել, եւ միայն հարուստները կրնան կաթոլիկէ ուսում տալ իրենց զաւակներուն:

ՀԻՒԼԷԱԿԱՆ լրտեսներէն Կրինկլէս ալ 15 տարի բանտարկութեան դատապարտուեցաւ Նիւ Եորքի մէջ: Ամբաստանեալը որ 29 տարեկան է, գղջալով խոստովանած էր թէ հիւլէական գաղտնիքներ գողցած էր Լոս Ալամոսի փորձերուն ատեն եւ յանձնած Տէր եւ Տիկին Ռոզէնպէրկի, որոնք մահուան դատապարտուեցան:

ՊԱՂՏԱՏԷՆ կը հեռագրեն թէ Իրաքի քարիւղի ընկերութիւնը նոր ծրագիր մը առաջարկած է, որուն համաձայն կառավարութիւնը պիտի բարձրացնէ իր մենաշնորհին փոխարժէքը: Այսպէս կը յուսան ազգայնացման առաջքը առնել:

ԵԳԻՊՏՈՍԻ ԵՒ ԱՆԳԼԻՈՅ միջեւ բանակցութիւնները կը շարունակուին բարեկամաբար: Վերջին լուրերու համաձայն, Մեծն Բրիտանիա համաձայն է սկզբունքով հեռացնել Սուէզի շրջանին զօրքեր, եթէ Եգիպտոս լուրջ երաշխիքներ ընծայէ, յանձն առնելով այդ շրջանին պաշտպանութիւնը: Կը պահանջէ նաեւ որ բրիտանական զօրք դրկուի Եգիպտոս, պատերազմի պարագային:

Պ. ԹՐՈՒՄԸՆ վեցուկէս միլիառ տոլարի նոր վարկ մը պահանջեց խորհրդարանէն, զինեալ ուժերուն համար: — Նախագահը վճռապէս հերքեց այն լուրը, թէ այս տարի իսկ Փարիզ պիտի երթայ, Պ. Օրիոլի այցելութիւնը փոխադարձելու համար:

Imprimerie DER AGOPIAN , 17, rue Damesme (13)
Le Gérant : A. NERCESSIAN

## «ՅԱՌԱՋ»Ի ՆՈՐ ԳԻՆԵՐԸ

Ապրիլ 1էն սկսեալ (Կիրակի) ՅԱՌԱՋԸ ձեռքէ կը ծախուի ՏԱՍԸ ՖՐԱՆՔԻ:

Ուրեմն, բաժնեգիններն ալ փոխուած են:

Ահաւասիկ նոր գիները, Ապրիլ 8էն սկսեալ (Յառաջի վերհրատարակման նոր շրջանը).—

Ֆրանսա եւ Գաղութներ.—

ՏԱՐԵԿԱՆ 2200, ՎԵՑԱՄՍԵԱՅ 1100 ՖՐԱՆՔ

Արտասահման.— ՏԱՐԵԿԱՆ 3000 ՖՐԱՆՔ:

Հարեւանցի ակնարկ մը կը բաւէ, հասկնալու համար թէ այս բաժնեգինները շատ վար կը մնան բուն գինէն:

Որոշեցինք առ այժմ գոհանալ այս կրճատեալ գիներով, այն վստահութեամբ թէ մեր ընթերցողներն ու բարեկամները պիտի ուզեն թեթեւցնել մեր նիւթական հոգերը.—

1.— ԿԱՆԽԻԿ ՎՃԱՐԵԼՈՎ ԲԱԺՆԵԳԻՆԵՐԸ:

2.— ՆՈՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐ ՃԱՐԵԼՈՎ:

3.— ՉԱՐԿ ՏԱԼՈՎ «ՅԱՌԱՋ»Ի ՏԱՐԱԾՄԱՆ ՖՈՆՏԻՆ:

Այս առթիւ կը խնդրուի բոլոր առկախ հաշիւները փակել մինչեւ Ապրիլ 8, դիւրացնելով մեր գործառնութիւնները:

Ապրիլ 8էն վերջ հին պարտքերն ալ նոր սակերով պիտի հաշուենք:

### ՖՐ. ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՕՐԸ

Կը տօնուի Փարիզի մէջ, նախաձեռնութեամբ Փարիզի մասնաճիւղին, ապրիլ 29ին CERCLE MILITAIREի (Place St. Augustin) մէջ, ժամը 15էն մինչեւ գիշեր:

### ՄԱՐԶԱԿԱՆ ՄՐՑՈՒՄ

Այս կիրակի, Ալֆորվիլի Ֆ. Հ. Մ. Ը. Մ.ի ախոյեանական կարեւոր մրցումը, S. O. Charentonի Ա. խումբին դէմ: Ալֆորվիլի գնդախաղի խումբը, ամէնէն զօրաւորներէն մէկն է Փարիզի եւ շրջաններու հայ խումբերուն մէջ, արժանի ամէն քաջալերութեան: Կը յանձնարարենք խիստ կարգապահութիւն մրցումի ընթացքին: Հաղորդակցութեան միջոցներ.— Charenton Ecoles, autobus 103, իջնել rue de Seine, Stade Municipal:

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ.— Տէր եւ Տիկին Միհրան Յովսէփեան եւ զաւակը իրենց խորին ցաւակցութիւնը կը յայտնեն Լիոնի մէջ մահացած ողբացեալ Sofբ. Կ. Սէփէթճեանի պարագաներուն, այս ցաւալի կորուստին առթիւ եւ փոխան ծաղկեպսակի 500 ֆրանք կը նուիրեն Այնճարի Յառաջ վարժարանին:



### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Հերմինէ Խրիմեան եւ զաւակները՝ Սուրէն եւ Ժիրայր, ինչպէս եւ եղբայրները եւ ազգականները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս կիրակի առաւօտ Փարիզի Հայոց եկեղեցին (15 rue Jean Goujon) իրենց ողբացեալ ամուսնոյն, հօր եւ եղբօր՝

ՎԱՀՐԱՄ ԽՐԻՄԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ: Կը հրաւիրուին իր յիշատակը յարգողները:

